Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Կ Կենտկոմի Արդյունաբերա-
ան արտադրության և շինա-
րության ղեկավարման բյու-
յի գաղափարական աշխա-
տանքի բաժին

ՀԿԿ Կենտկոմի Գյուղատնտե-
սական արտադրության ղեկա-
վարման բյուրոյի գաղափարա-
կան աշխատանքի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈՒՆՎԱՐ 2 1963

## ԹՎԵՐՈՎ ԵՎ ՓԱՍՏԵՐՈՎ

ԱՅՍ ՏԱՐԻ ՍՍՌՄ-ՈՒՄ ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՈՒՏԸ ԿԱՃԻ 7 ՏՈԿՈՍՈՎ։

ՍՍՌՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴՐԱՄԱԿԱՆ ԵԿԱՄՈՒՏՆԵՐՆ ԱՅՍ ՏԱՐԻ, ԱՆՑՅԱԼ ՏԱՐՎԱ ՀԱՄԵՄԱՏՈՒԹՅԱՄԲ, ԿԱՎԵԼԱՆԱՆ 5,9 ՏՈԿՈՍՈՎ։

ԱՅՍ ՏԱՐԻ ՊԵՏԱԿԱՆ ԵՎ ԿՈՈՊԵՐԱՏԻՎ ԱՌևՏՐԻ ՄԱՆՐԱԾԱԽ ԱՊՐԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՎԵԼԱՆԱ 6,9 ՏՈԿՈՍՈՎ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ՍՐՏԻՆ ՄՈՏ ԵՎ ՆԵՐԳՈՐԾՈՒՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԱՄԱՐ

*Ամենօրյա ագիտացիան կենդանի ու կոնկրետ պարտիական աշխատանք է աշխատավորների հետ, մեր մեծ երկրի բանվորների, ծառայողների, կոլտնտեսականների ու մեխանիզատորների հետ, ամբողջ բնակչության հետ, որի նպատակն է լայն մասսաներին հասցնել հարազատ Կոմունիստական պարտիայի ճշմարիտ խոսքը և մոբիլիզացնել նրանց ուժերը ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները պատվով կատարելու համար։*

*Որպեսզի ագիտացիան լինի յուրաքանչյուր ունկնդրի սրտին մոտ և ներգործուն, այն պետք է սերտորեն կապել կյանքի հետ, կոմունիստական շինարարության, յոթնամյակի հինգերորդ տարվա խնդիրների, մեր ամբողջ տնտեսական շինարարության հետ։*

*Ագիտատոր, հիշիր, որ բովանդակալից, նպատակասլաց, կյանքի հետ սերտորեն կապված ագիտացիան միշտ էլ ունկնդիրների մեջ առաջ է բերել ավելի լավ աշխատելու*

ցանկություն, զարգացրել է նրանց ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը պարտիայի և կառավարության որոշումներն իրագործելու համար մղվող պայքարում։

Ուստի այս օրերին, երբ մեր մեծ երկրի աշխատավորները անձնուրաց պայքար են մղում յոթնամյակի հինգերորդ տարվա խնդիրները գերազանց ցուցանիշներով կատարելու համար, անհրաժեշտ է ունկնդիրներին ավելի խոր և բազմակողմանի պարզաբանել ՍՄԿՊ Նոյեմբերյան պլենումի նյութերը։

Մեր հարազատ Կոմունիստական պարտիայի հերոսական տարեգրության մեջ պատվավոր տեղ է գրավում ՍՄԿՊ 1962 թվականի Նոյեմբերյան պլենումը։ Այն մեծագույն իրադարձություն էր պարտիայի և ժողովրդի կյանքում, որովհետև նա ստեղծագործորեն քննարկեց այնպիսի կարևորագույն հարց, ինչպիսին էր ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը։

ՍՄԿՊ Նոյեմբերյան պլենումում իր խորիմաստ և բազմաբովանդակ զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը հանգամանորեն և վառ կերպով նշեց կոմունիզմի կառուցման ուղիով մեր առաջընթաց շարժման լայն հեռանկա-



րը, խորապես և բազմակողմանիորեն հիմնավորեց ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը վերակառուցելու, արդյունաբերության և շինարարության տրնտեսական կառավարումը կատարելագործելու, երկրում մեկ միասնական պարտիականպետական վերահսկողություն ստեղծելու անհրաժեշտությունը և քաղաքական ու տնտեսական նպատակահարմարությունը։

«Այն, ինչ մեր պարտիան նախատեսել է իրագործել,— ասաց պլենումում ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— թելադրված է ոչ թե այս կամ այն անձի սուբյեկտիվ ցանկություններով, այլ քաղաքական ու տնտեսական նպատակահարմարությամբ, ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման լենինյան սկզբունքները էլ ավելի մեծ չափով զարգացնելու անհրաժեշտությամբ»։

Այդ է պատճառը, որ Նոյեմբերյան պլենումի որոշումները արժանացան ամբողջ պարտիայի, ամբողջ ժողովրդի միահամուռ հավանությանն ու աջակցությանը։ Աշխատավորները ջերմորեն ողջունեցին ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման լենինյան սկզբունքները էլ ավելի մեծ չափով զարգացնելու անհրաժեշտության

մասին պլենումի ձեռնարկած միջոցառումները:

Վերը հիշվածը նկատի ունենալով, մեր ագիտատորները իրենց առաջնահերթ պարտականությունը պետք է համարեն, որպեսզի ամեն մի բանվոր ու ծառայող, կոլտնտեսական ու մեխանիզատոր հստակ պատկերացում ունենա Նոյեմբերյան պլենումի որոշումների մասին և ակտիվորեն պայքարի այդ որոշումները կենսագործելու համար: Լավ կլինի, որ մեր ագիտատորները շարունակեն ունկնդիրների հետ զրույցներ ունենալ հետևյալ թեմաների շուրջը. «ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի նշանակությունը մեր երկրի կյանքում», «ՍՄԿՊ կազմակերպական դերի աճը էկոնոմիկայի կառավարման գործում», «Պարտիայի կառուցման արտադրական սկզբունքի նշանակությունը», «Կազմակերպական և իդեոլոգիական աշխատանքի միասնության սկզբունքը պարտիական շինարարության հիմքն է», «Աշխատանքի արտադրողականության անշեղ աճը՝ կոմունիզմի կառուցման գլխավոր պայմանն է», «Տեխնիկական քաղաքականության ու պրոգրեսի հարցերը ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներում», «Քիմիական արդյունաբերության դերը կոմունիզմի



նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում», «Նոյեմբերյան պլենումը ժողովրդական տնտեսության գիտական պլանավորման խնդիրների մասին», «Մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացումը և արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքների հետագա զարգացումը» և այլն:

Ինչ խոսք, որ այս թեմաների շուրջ ունկնդիրների հետ զրույց ունենալը քիչ ջանքեր չեն պահանջի ագիտատորներից: Չէ՞ որ զրույցը ագիտացիայի կարևորագույն ձևերից մեկն է, այն ներգործուն և նպատակասլաց դարձնելու համար հարկավոր է լուրջ նախապատրաստական աշխատանք կատարել: Այսինքն հասնել այն բանին, որ զրույցը դառնա գրավիչ, մատչելի, այն ունկնդրին մատուցվի հմտությամբ, զրույցի ամեն մի մասնակից զգա պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Նոյեմբերյան պլենումի որոշումների վեհությունը, մեր երկրի ծաղկման ու բարգավաճման գործում նրանց ռևոլյուցիոն նշանակությունը:

Հանգամանորեն պարզաբանելով պարտիայի Նոյեմբերյան պլենումի որոշումները, ագիտատորը իր զրույցի ընթացքում մանրակրկիտ կերպով պետք է խոսի այն կոնկ-

րետ առաջադրանքների մասին, որ դրված են տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի առջև։ Ագիտացիոն նման զրույցը կնպաստի ձեռնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի առջև դրված խնդիրների կատարմանը, ամենից առաջ աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, երկրին ավելի շատ նյութական բարիքներ տալուն։ Ահա, օրինակ, Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի պարտկազմակերպությունը, որը ինչպես պատմում է պարտկոմիտեի քարտուղար Ռ. Գալստյանը, կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, բարելավելով կազմակերպական-քաղաքական աշխատանքը, այն շաղկապելով արտադրության հարցերի հետ, հասել է լուրջ հաջողությունների։ Գործարանում անցյալ տարի աշխատանքի արտադրողականությունը պլանով նախատեսվածից աճել է 3,7 տոկոսով։ Մեկ ռուբլուն ընկնող ապրանքային արտադրանքի ծախսերը պլանից դուրս իջեցվել են 3 տոկոսով։ Ձեռնարկության գրեթե բոլոր ցեխերում և աշխատամասերում զգալի աշխատանք է կատարվել առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, արտադրական մի շարք պրոցեսների մեքենայացման ու ավտոմատաց-



ման, ինչպես նաև գործող սարքավորումների մոդեռնացման ուղղությամբ։ Անցած տարի գործարանի նորարարների 850 առաջարկից արտադրության մեջ ներդրվեց 590 առաջարկ, որոնց տնտեսական օգուտը կազմում է 888,8 հազար ռուբլի։

Շատ ճիշտ է նկատում պարտկոմիտեի քարտուղարը, որ այս հաջողությունները մարդկանց հետ կատարվող պարտիական-կազմակերպական, քաղաքական աշխատանքի արդյունք են։ Վերջերս պարտկազմակերպությունը քննության է առել «30—30 ա ցեխի աշխատողների բարոյական կերպարը արտադրության մեջ, հասարակական կյանքում և ընտանիքում» հարցը։ Ժողովի նախապատրաստմանը մասնակցել են տասնյակ կոմունիստներ, ագիտատորներ, որոնք եղել են կոլեկտիվի բոլոր անդամների տներում, ուսումնասիրել են յուրաքանչյուրի կյանքը, հետաքրքրվել նրանց կենցաղով, հասարակական աշխատանքով։

Այստեղ խրախուսելի է նաև այն, որ խելացիորեն օգտագործվում են ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները։ Ունկնդիրները անհատական և խմբային զրույցների, դասախոսությունների, տեղական ռադիոյի, բազմատիրաժ թերթի, դիտո-

դական նյութերի և այլ միջոցներով հիանալի պատկերացում ունեն Նոյեմբերյան պլենումի որոշումների մասին և դրա շնորհիվ ակտիվորեն պայքարում են այդ որոշումների կենսագործման համար։

Պարտիայի Նոյեմբերյան պլենումի որոշումները կոլտնտեսականների սեփականությունը դարձնելու գործում, ագիտացիոն աշխատանքի խրախուսելի փորձ ունեն Շահումյանի շրջանի ՍՄԿՊ XXII համագումարի անվան կոլտնտեսության ագիտատորները։ Նրանք Նոյեմբերյան պլենումի արդյունքներին նվիրված յուրաքանչյուր զրույց կապում են ոչ միայն իրենց կոլտնտեսության առջև դրված խնդիրների հետ, այլև այն լրացուցիչ ռեզերվները հայտնաբերելու և արդյունավետ օգտագործելու հետ, որ կան իրենց կոլտնտեսությունում։ Կոլտնտեսության վարչության նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Մեժլումյանը լինելով ագիտատոր, կոլտնտեսականներին պարզաբանում է Նոյեմբերյան պլենումի որոշումը՝ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու վերաբերյալ։ Նա կոնկրետ օրինակներով ունկնդիրներին պարզաբանում է, թե իրենց կոլտնտեսությունում ինչպիսի հնարավորություններ կան խաղողի, հացա-



հատիկի, բանջարեղենի բերքատվությունը և անասունների մթերատվությունը բարձրացնելու համար։ Կոլտնտեսային առօրյա աշխատանքից վերցրած օրինակներով նա ցույց է տալիս այն հնարավորությունները, որոնց միջոցով կարելի է ավելի արդյունավետ օգտագործել գյուղատնտեսական տեխնիկան, պարարտանյութերը, գերազանց նախապատրաստվել գարնան գյուղատնտեսական աշխատանքներին։

Ռեսպուբլիկայում կատարվող ագիտացիոն աշխատանքի փորձից կարելի է նման շատ օրինակներ բերել։

Սակայն ագիտացիոն աշխատանքում քիչ չեն նաև թերությունները։

ՍՄԿՊ Նոյեմբերյան պլենումի որոշումների պարզաբանումը չպետք է կրի կամպանիոն բնույթ, այն պետք է սիստեմատիկ և համբերատար պարզաբանել աշխատավորների լայն շրջանում, որպեսզի յուրաքանչյուր աշխատող իմանա, թե ինչ է անելու ինքը յոթնամյակի հինգերորդ տարում։ Հարկավոր է ամենայն ուշադրությամբ հետևել, որ ոչ ոք, ոչ մի բնակիչ, դուրս չմնա մեր պարտիական կազմակերպությունների քաղաքական ներգործությունից։

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ԶՐՈՒՅՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՄԱՍԻՆ

*Սովետական դեմոկրատիան՝ դեմոկրատիայի նոր, բարձրագույն տեսակն է, որը հաստատված է հասարակության պետական ղեկավարումը բանվոր դասակարգի ձեռքն անցնելու շնորհիվ և նշանակում է աշխատավոր ժողովրդի իսկական լիիշխանություն, քաղաքացիների իրոք իրավահավասարություն, նրանց բազմակողմանիորեն երաշխավորված սոցիալական իրավունքների և քաղաքական ազատությունների տրամադրում։*

*Սովետական Միությունը ամբողջ աշխարհի ժողովուրդների համար սոցիալիստական դեմոկրատիզմի դպրոց է, կենդանի ապացույցն այն բանի, որ միայն սովետական դեմոկրատիան է ապահովում անձի իսկական ազատություն, բոլոր աշխատավորներին պայքարի ոգեշնչում ընդդեմ ռեակցիայի, ընդդեմ ֆաշիզմի, հանուն իսկական դեմոկրատիայի, խաղաղության, սոցիալիզմի։*



*Դրա վառ ապացույցն է Սովետական Միության կողմից կուբայական հարցի խաղաղ լուծումը և ԱՄՆ-ի ագրեսիվ շրջանների կողմից Կուբայի դեմ նախապատրաստված ագրեսիայի կանխումը։*

*ՍՄԿԿ Ծրագրում ասված է, որ անցումը կոմունիզմին նշանակում է սովետական քաղաքացիների անձի և իրավունքների ամենակերպ զարգացում։ Սոցիալիզմը աշխատավորներին տվեց և երաշխավորեց ամենալայն իրավունքներ ու ազատություններ։ Կոմունիզմը աշխատավորներին բերում է նոր մեծ իրավունքներ և ազատություններ։ Այնինչ կապիտալիզմը ոչնչացնում է աշխատավորների դեմոկրատական ազատություն ձեռք բերելու ամեն մի փորձ։ Այդ հակադեմոկրատական լագերի առաջատար ուժը ԱՄՆ-ն է, որի ամբողջ քաղաքականությունը կառուցված է համաշխարհային տիրապետության հասնելու ցնորամիտ երազանքների վրա։*

*Պատերազմից հետո ԱՄՆ-ում հրատարակված հակակոմունիստական և հակաբանվորական օրենքների (Տաֆտ-Հարտլիի, Մակկարենի և այլն), ինչպես նաև պետական պաշտոնյաների «լոյալությունն» ստուգելու մասին օրենքը, ՍՍՌՄ-ում և ժողովր-*

դական դեմոկրատիայի երկրներում քայքայիչ աշխատանք տանելու համար հարյուր միլիոնավոր դոլարներ հատկացնելու վերաբերյալ կոնգրեսի կողմից բազմաթիվ անգամ ընդունված օրենքը և շատ այլ ակտեր խոսում են քաղաքացիների իրավունքների և ազատությունների ոչնչացման գործում ԱՄՆ-ի ունեցած ռեակցիոն դերի մասին։

Վ. Ի. Լենինը «Կոնստիտուցիոն պատրանքների մասին» հոդվածում գրել է՝ «Եթե քաղաքական իշխանությունը պետության մեջ գտնվում է այնպիսի դասակարգի ձեռքին, որի շահերը զուգադիպում են մեծամասնության շահերին, այն ժամանակ հնարավոր է պետության կառավարումն իսկապես համաձայն մեծամասնության կամքի։ Իսկ եթե քաղաքական իշխանությունը գտնվում է այնպիսի դասակարգի ձեռքին, որի շահերը տարբերվում են մեծամասնության շահերին, այն ժամանակ ամեն մի կառավարում ըստ մեծամասնության անխուսափելիորեն դառնում է այդ մեծամասնության խաբեություն կամ ճնշում։ Ամեն մի բուրժուական ռեսպուբլիկա ցույց է տալիս մեզ դրա հարյուրավոր և հազարավոր օրինակներ»։

Սովետական պետության մեջ իշխանու-



թյունը լիովին պատկանում է աշխատավորներին ի դեմս նրանց ներկայացուցչական մարմինների՝ աշխատավորների դեպուտատների Սովետների, որոնք միավորում են բանվորներին, կոլտնտեսականներին, ինտելիգենցիային։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ գումարման կազմը ակնառու կերպով հաստատում է մեր երկրում սոցիալիստական դեմոկրատիայի՝ գնալով ավելի ու ավելի զարգացումը։ Ազգությունների Սովետի 345 դեպուտատների ընդհանուր թվից 52,9 տոկոսը բանվորներ և գյուղացիներ են, Միության Սովետի 359 դեպուտատներից 199-ը արտադրության մեջ աշխատող բանվորներ են, 160-ը կոլտնտեսականներ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկու պալատների դեպուտատներից 390-ը կանայք են։ Դեպուտատների կազմը նորացված է ավելի քան 70 տոկոսով։ Միլիոնավոր աշխատավորներ կառավարում են երկիրը և այդ մեր պետական ապարատը դարձնում է իսկական դեմոկրատական, ժողովրդին մոտ ու հարազատ։

Սովետների դերը գնալով ավելի ու ավելի է աճում տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի լուծման, սոցիալիստական օրինականության և հասարակական կարգի ամրապնդման գործում։

Մեր Սովետները դարձել են ժողովրդի համապարփակ կազմակերպություններ, նրա միասնության մարմնավորումը։ Միայն Հայաստանում տեղական Սովետներում կա 18.116 դեպուտատ, որոնց թվում 11.872-ը բանվորներ են ու կոլտնտեսականներ։ Սովետներին առընթեր գործում են 2.355 մըշտական հանձնաժողովներ, որոնք միավորում են 12.123 դեպուտատ, և այդքան էլ սովետական ակտիվիստներ են աշխատում բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, թոշակառուների թվից։ Լայն մասսաների հետ Սովետների ունեցած կապը տասնապատկում է պետական իշխանության մարմինների ուժը։

Նոր դեմոկրատիզմով են թափանցված ընտրական օրենքի նորմաները, օրենք, որը կարգավորում է դեպուտատության թեկնածուներ առաջադրելու կարգը։

Կոնստիտուցիոն սկզբունք է դեպուտատների պատասխանատվությունը, ընտրողների առջև նրանց հաշվետու լինելը և ժամկետից շուտ նրանց ետ կանչելու իրավունքը։

Սովետական պետությունը թևակոխել է նոր էտապ, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Մեր զարգացման նոր էտապում պրոլետարիատի դիկտատու-





րայի պետությունը վերաճել է համաժողովրդական սոցիալիստական պետության, իսկ պրոլետարական դեմոկրատիան՝ համաժողովրդական դեմոկրատիայի։

Եթե սովետական դեմոկրատիայի պայմաններում ամրապնդվում է ժողովուրդների բարեկամությունը, նրանց իրավահավասար համագործակցությունը, ապա կապիտալիստական պետություններում կիրառվում է ճնշված ազգերի դիսկրիմինացիայի քաղաքականություն։ ԱՄՆ-ում, օրինակ, 18 միլիոնանոց նեգր ժողովուրդը փաստորեն զրկված, հեռացված է պետական իշխանության մասնակցություն ունենալուց։ ԱՄՆ-ի կոնգրեսի նախորդ կազմի 531 անդամների թվում չկար ոչ մի բանվոր կամ շարքային ֆերմեր։ Կոնգրեսի անդամների կեսից ավելին մոնոպոլիաներին ծառայող իրավաբաններ են, իսկ տեղերի մեկ քառորդ մասը զբաղեցնում են անմիջապես իրենք՝ ձեռնարկատերերն ու բանկիրները։

Սովետական դեմոկրատիայի շնորհիվ մեր բազմազգ պետության բոլոր ժողովուրդների միջև ստեղծվել և ամրապնդվել է փոխադարձ վստահություն ու բարեկամություն։ Այդ բարեկամական միասնության պետական ձևը Սովետական Սոցիալիստական





Ռեսպուբլիկաների կամավոր միավորումն է։ Միևնույն ժամանակ միութենական ռեսպուբլիկաները ինքնուրույն են, նրանք իրենց տերիտորիաներում կենսագործում են լիակատար իշխանություն, ինքնուրույն կերպով լուծում են բոլոր պետական հարցերը, ներառյալ նաև իրենց օրենսդրության ընդունումը։

Սովետական դեմոկրատիայի սիստեմում առաջատար դերը պատկանում է Սովետական Միության Կոմունիստական պարտիային, որը զարգացնում է աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը, մասսաներին ավելի ու ավելի լայնորեն է մասնակից դարձնում պետության գործերին։

Սովետական դեմոկրատիայի զարգացման գործում վիթխարի նշանակություն ունեն ՍՄԿՊ XX—XXII համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումները, որոնք վերականգնեցին սովետական դեմոկրատիայի լենինյան նորմաները, ակտիվացրին աշխատավորների դեպուտատների Սովետների աշխատանքը։

Կոմունիստական պարտիան բոլոր միջոցները ձեռք է առնում, որպեսզի ավելի բարձրացնի աշխատավորների հասարակական կազմակերպությունների դերը կոմունիզմի



կառուցման համար մղվող համաժողովրդական պայքարում։

Դեմոկրատիայի հետագա զարգացման գործում մեծ ավանդ հանդիսացան ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան (1962 թ.) պլենումի որոշումները։ Ն. Ս. Խրուշչովը պլենումում խոսեց մեր երկրում մեկ միասնական, մըշտապես գործող պարտիական-պետական վերահսկողություն ստեղծելու մասին՝ նրանում աշխատավորներին ակտիվ մասնակից դարձնելու մասին։ Այդպիսի վերահսկողության կազմակերպումն արդեն սկսված է։

Սոցիալիզմը մեծ իրավունքներ է տվել աշխատավորներին օգտվելու կյանքի բարիքներից, մեզ մոտ յուրաքանչյուրն աշխատում է ըստ ընդունակությունների և ստանում ըստ աշխատանքի քանակի ու որակի։

Կոմունիստական հասարակությունը յուրաքանչյուր մարդու կապահովի ըստ պահանջմունքների։ Դա կլինի բարձր կազմակերպված արտադրության և զարգացած տեխնիկայի հասարակություն, կփոխի աշխատանքի բնույթը, բայց հասարակության անդամներին չի ազատի աշխատանքից։ Այն չի լինի անգործության և պարապության հասարակություն։ Յուրաքանչյուր աշխատունակ մարդ կմասնակցի հասարակական աշխա-

տանքին և կապահովի հասարակության նյութական ու հոգևոր հարստության անընդհատ աճը։

Սովետական ժողովուրդը նոր հասարակությունը կառուցում է աշխատանքով, իր եռանդով ու բանականությամբ։ Սովետական մարդիկ, այդ թվում և Հայաստանի աշխատավորները իրենց աշխատանքով ձգտում են մոտեցնել կոմունիզմի հաղթանակը, նրանք աշխատում են իրենց համար, իրենց հասարակության համար։ Այդ հիանալի նպատակը հեռավոր ապագա չէ։ Սովետական մարդկանց արդի սերունդը կապրի կոմունիզմի օրոք։ «Այսօր անել ավելի շատ,— ասել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— այդ նշանակում է վաղը ունենալ ավելի շատ»։

Կոմունիստական աշխատանքի շարժումը մեր երկրում կյանքի է կոչվել սոցիալիստական շինարարության ամբողջ ընթացքով, տնտեսության վիթխարի հաջողություններով։

Սովետական ժողովուրդը արտադրության բարձրացման գործում հանդես է բերում իսկական տիրոջ շահագրգռվածություն, իր ամբողջ ուժերն ու եռանդը նվիրում է յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու գործին։

Ռեսպուբլիկայում հանուն կոմունիստա-



կան աշխատանքի ծավալված շարժման մեջ մասնակցում է 4.000 բրիգադ, հերթափոխություն և տեղամաս, իսկ Սովետական Միության մեջ՝ միլիոնավոր։ Դա մասսաների գիտակցականության, նրանց ստեղծագործական նախաձեռնության ակտիվության և ինքնագործունեության աճի ցուցանիշ է։ Դա վկայում է այն մասին, որ հասարակության գործերի կառավարման նոր կազմակերպության ծիլերը իրենց ճանապարհ են բաց անում։

Ավելի քան չորս տասնամյակ առաջ Վ. Ի. Լենինը առաջին կոմունիստական շաբաթօրյակներում տեսավ իրենց աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց ունեցած վերաբերմունքի արմատական փոփոխությունը, այնպիսի շրջադարձ, որն ուներ համաշխարհային-պատմական նշանակություն, և կոչ արեց պրակտիկ դասեր քաղել այդ մեծ նախաձեռնությունից։

«Մենք,— ասել է Վ. Ի. Լենինը,— կաշխատենք մասսաների գիտակցության մեջ, սովորության մեջ, նրանց առօրյա կյանքի մեջ արմատավորել «բոլորը մեկի և մեկը բոլորի համար» կանոնը, «յուրաքանչյուրն ըստ իր ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ իր պահանջմունքների» կանոնը, աստի-

ճանաբար, բայց անշեղորեն մտցնել կոմունիստական կարգապահություն և կոմունիստական աշխատանք»։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը անշեղորեն կենսագործում է լենինյան մեծ կանխագծումները։ Նրա յուրաքանչյուր հաջողություն երկիրը մոտեցնում է այն մեծ նպատակին, որն առաջադրել է պարտիայի XXII համագումարը։

ՍՄԿՊ XXII համագումարում տված զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշեց. «Մեր երկրի կյանքում վերջին քառորդ դարում, այն պահից, երբ ընդունվեց ՍՍՌՄ ներկայումս գործող Կոնստիտուցիան, մեծ փոփոխություններ են տեղի ունեցել։ Սովետական Միությունը թևակոխել է իր զարգացման նոր էտապը, ավելի բարձր աստիճանի է հասել սոցիալիստական դեմոկրատիան։ ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան, որի մշակմանը մենք ձեռնամուխ ենք լինում, պետք է արտացոլի կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում սովետական հասարակարգի կյանքի նոր գծերը»։

Ա. ԼԱԼԱՅԱՆ



## ԱԳԻՏԱՏՈՐ ՍՈՐՈԿԻՆԸ ՄԵՐ ՍՐՏԻՑ Է ԽՈՍՈՒՄ

Լենինգրադի Սերգո Օրջոնիկիձեի անվան Բալթիական նավաշինական գործարանի ագիտատոր, փականագործ Ն. Սորոկինի հոդվածը «Ագիտատորի պարտքի մասին» ջերմ ընդունելություն գտավ Հոկտեմբերյանի շըրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան փորձա-ցուցադրական կոլտնտեսության ագիտկոլեկտիվում։ Ագիտատորները հետաքրքրությամբ ընթերցում են հոդվածը և ջերմ հավանություն տալիս։

— Ես մանրամասն կարդացել եմ այդ հոդվածը։ Սորոկինը մեր սրտից է խոսում։ Նրա առաջ քաշած այժմեական ու կարևոր հարցերը իրավամբ հետաքրքրում ու հուզում են բոլորիս,— ասում է ագիտկոլեկտիվի ղեկավար Սուրեն Սմբատյանը։— Սորոկինը խոսում է ագիտատորի պարտքի ու խղճի մասին, այն մասին, թե ինչպես անել, որ նրա ներդրումը մեր ընդհանուր կոմունիստական

կաթսայի մեջ ավելի շատ, ավելի ծանրակշիռ լինի։

Պարտիան մեր ագիտատորներին վստահել է մեծ ու պատվավոր գործ։ Նրանցից պահանջում է դաստիարակել մարդկանց, պաշտպանել կոմունիստական սկզբունքը։ Միանգամայն տեղին է ասված հոդվածում, որ ագիտատորները պետք է աշխատեն մեծ բարեխղճությամբ, համախմբեն մարդկանց կոլեկտիվ ուժերն ու ջանքերը մեր ընդհանուր գործի համար։

Մեզ մոտ նույնպես քիչ չեն այն ագիտատորները, որոնք աշխատում են պարտքի ու խղճի մեծ զգացումով։ Նրանք կատարում են մեկ համընդհանուր գործ, հոգ են տանում, որ աշխատանքը լավ գնա կոլտնտեսությունում, իրենց խոսքը բուն նպատակակետին հասնի, այն գործով ամրապնդվի։ Այդպիսի սրտակից մարդկանցից է ագիտատոր Հակոբ Հակոբյանը։ Նա լավ ծանոթ է կոլտնտեսային արտադրությանը։ Ավելի քան 12 տարի հմտորեն ղեկավարել է կոլտնտեսության բամբակագործական բրիգադներից մեկը և այդ տարիների ընթացքում ստացած բարձր բերքով ոչ ոքի չի զիջել իր առաջնությունը։ Ագիտատոր Հակոբյանը լավ աշխատանքի համար երկրորդ տարին է, ինչ միահամուռ



ընտրվել է գյուղական Սովետի գործկոմի նախագահ։ Բայց և այնպես նա նորից կոլտնտեսականների հետ է, բամբակագործական № 3 բրիգադայի հարգված ագիտատորը։ Նա լավ գիտե մարդկանց, ծանոթ է նրանց թույլ ու ուժեղ կողմերին, կոլտնտեսականները շատ հաճախ նրա մոտ են գնում և միշտ էլ գոհ մնում նրա օգտակար խորհուրդներից։ Հմուտ ագիտատորը իր ամենօրյա ագիտացիան սերտորեն կապում է պարտիայի XXII համագումարի և Նոյեմբերյան պլենումի որոշումների կատարման հետ։ Նա բրիգադայի աշխատավորներին սիրով ծանոթացնում է գիտության նվաճումներին ու առաջավոր փորձին։ Համառորեն պրոպագանդում է նորն ու առաջավորը։ Բոլորը հետաքրքրությամբ ունկնդրում են նրան և իրենց ուժերը միավորում բարձր բերքի համար մղվող համաժողովրդական մեծ պայքարում։

Ագիտատոր Հակոբյանը ունկնդիրների հետ զրույցներ ունենալուց բացի զբաղվում է նաև դաստիարակչական ու կազմակերպական հարցերով։ Անցած տարի, բերքահավաքի վճռական օրերին, առանձին բամբակագործներ անբավարար էին մասնակցում բերքահավաքի աշխատանքներին։ Գործը տուժում

էր, բերքի հավաքումը ձգձգվում էր։ Եվ ահա բամբակագործական բրիգադիր Գրիգոր Սարգսյանը դիմում է ագիտատորի օգնությանը։ Հարկավոր էր ուժերը համախմբել, բոլորի մասնակցությունն ապահովել բամբակի հավաքման աշխատանքներին։ Ագիտատորը և բրիգադիրը միասին այցելում են կոլտնտեսականներ Հ. Հովհաննիսյանի, Ա. Թովմասյանի և Թ. Զաքարյանի բնակարանները, ընկերաբար ու սրտագին զրուցում նրանց հետ, համոզում նրանց, որ չպետք է անձնականը գերադասել ընդհանուրի շահերից, այլ ակտիվորեն մասնակցել աշխատանքի։ Նրանք զգում են իրենց սխալը և հետևյալ իսկ օրը մասնակցում բերքահավաքի և գյուղատնտեսական մյուս աշխատանքներին։

Իհարկե, Հոկտեմբեր գյուղի բազմաճյուղ կոլտնտեսությունում ագիտատոր Հակոբյանը եզակի չէ։ Այստեղ հմուտ ագիտատորներից են նաև Վարդան Վարդանյանը, Մկրտիչ Մկրտչյանը և Աղասի Մնացականյանը։ Նրանք միշտ էլ հաջողությամբ են կատարում աշխատավորների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը։



— Կոմունիզմի համար կատարած ամենօրյա աշխատանքում մենք տեսնում ենք մեր ուրախությունը, մեր երջանկությունը։ Եվ ագիտատորի կոչումը մեզ համար ոչ թե բեռ, ոչ թե «ծանրաբեռնվածություն է», այլ մեծ, պատվավոր գործ,— ասում են նրանք։

Նման շատ օրինակներ կարելի է թվել. դրանք խոսում են մեր ագիտատորների լավ աշխատանքի, նրանց խղճի ու պարտքի մեծ զգացումների մասին, որին իր հոդվածում այնքան մեծ նշանակություն ու տեղ է տվել ագիտատոր Սորոկինը։

Բայց միակողմանի կլինի ասել, որ մեր բոլոր ագիտատորները լավ են աշխատում։ Լավերի կողքին դեռ կան ագիտատորի մեծ կոչումը չարդարացնողներ։ Եթե բոլոր ագիտատորները լավ աշխատեն, ինչպես պետք է, իրենց ուժերը ներդնեն ագիտացիայի գործին, ապա հաջողությունները ավելի շատ կլինեն։

Գյուղում գրեթե բոլորը ճանաչում են ընկ. Վ. Մովսիսյանին։ Նա ուսուցիչ է և միաժամանակ ագիտատոր։ Բայց այն բրիգադայի աշխատավորները, որոնց ագիտատորն է Մովսիսյանը, իրավացի կերպով դժգոհում են նրանից։ Նա դեպքից-դեպք է աշխատավորների մոտ լինում՝ այդ պատվավոր գործը

իրեն համար «ծանրաբեռնվածություն» համարելով։ Մովսիսյանը ընդունակ ու գործին քաջատեղյակ ընկեր է, բայց իր կարողությունները լրիվ չի օգտագործում, ինչպես ասում են, գլուխ է պահում։

Ագիտատոր Սորոկինը իր հոդվածում միանգամայն իրավացի կերպով առաջ է քաշում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում ագիտատորների դերի բարձրացման հարցը։ Դրա հետ սերտորեն առնչվում են նաև արտադրության կատարելագործման, արտադրողականության բարձրացման հարցերը։ Նա առանձնակի նշանակություն է տալիս ներքին ռեզերվների լրիվ օգտագործմանը և հեռանկարային հարցերի լայն պրոպագանդմանը։ Դրանք մեր ագիտատորների առաջնային անելիքները պետք է լինեն։

Այդ ուղղությամբ մեր ագիտատորները մեծ անելիքներ ունեն։ Չնայած այդ կոլտնտեսությունը Հոկտեմբերյանի տերիտորիալ-արտադրական վարչության գոտու առաջավոր կոլտնտեսություններից մեկն է, բայց այնտեղ կան մի շարք թերություններ։ Կոլտնտեսային արտադրության կատարելագործման, արտադրվող հումքի էժանացման ուղղությամբ էական միջոցա-



ռումներ չեն ձեռնարկվում։ Քիչ է հոգ տարվում մեքենայական աշխատանքի մակարդակը ավելի բարձրացնելու (հատկապես այգեգործության և բանջարաբուծության մեջ), ինչպես նաև գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը աշխատավորների լայն սեփականությունը դարձնելու ուղղությամբ։

Մեր ագիտացիոն-մասսայական աշխատանքի հիմքում պետք է դրվեն այդ հարցերը։

Ագիտատորները բավականաչափ գործ կատարել են հանրային աշխատանքում բոլորի պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ, բայց էլի գործը իր անհրաժեշտ բարձրության վրա չէ։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ջագլադայի «Թանկ գնահատեցեք հողագործի պատիվը» հոդվածը, ճիշտ է, մեր ագիտատորները հասցրել են յուրաքանչյուր աշխատավորի, սակայն դեռ ունենք հողագործի պատիվը արատավորող ու ոտնահարող առանձին աշխատողներ։ Ջրիկները, անբանը, շվողը, լոդրը ոչ միայն անհանդուրժելի չարիք են, այլև գաղափարական հակառակորդ։ Շատ ճիշտ է ասված Սորոկինի հոդվածում։ Հակառակորդների դեմ պետք է ամբողջ ուժով

պայքարել, անխնա մերկացնել նրանց։ Այդ կարևոր գործում իրենց վճռական անելիքը պետք է ունենան մեր ագիտատորները։ Նրանք յուրաքանչյուր մարդու, հատկապես երիտասարդների միտքն ու սիրտը պետք է ամրապնդեն, կոփեն դեպի ժողովուրդը, պարտիան ունեցած հավատարմությամբ՝ ահա թե տվյալ էտապում որն է գլխավորը ագիտատորների գործունեության մեջ։

— Այժմ մեր ամբողջ ուշադրությունը կենտրոնացված է ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումների կենսագործման ուղղությամբ։ Կոլտնտեսային պարտիական կազմակերպությունը այս օրերին ծավալուն միջոցառումներ է մշակում ագիտացիոն-մասսայական աշխատանքները նոր պահանջների ոգով վերակառուցելու, մարդկանց կոմունիստական դաստիարակությունը արժանի բարձրության վրա դնելու համար։ Այդ տեսակետից մեզ շատ կօգնի փառաբանված ագիտատոր Սորոկինի հոդվածը, որը լավագույն օրինակ է ծառայում մեր ագիտատորների գործունեության համար։ Նա մեր սրտից է խոսում, նա իր հոդվածով մեզ օգնում է ագիտացիոն ամբողջ աշխատանքը նոր բարձրության վրա դնելու համար,— ասում է ագիտկոլեկտիվի ղեկավար Ս. Սմբատյանը։

Հ. ԱՍՏԱԲԱՑՅԱՆ

## ԴԻՏՈՂԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐ

*Այս տարի ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը յոթնամյակի առաջադրանքը կգերազանցի մոտավորապես 7 միլիարդ ռուբլով*



-Այս տարի ՍՍՌՄ-ում
կձուլվի
ավելի քան 59 միլիոն տոննա չուգուն,
80 միլիոն տոննա պողպատ



-Նոր տարում Սովետական Միությունը
կարտադրի
407.9 միլիարդ կւ./վտ-ժամ էլեկտրոէներգիա։



— Այս տարի մեր երկրի բնակչության համար կկառուցվի և շահագործման կհանձնվի 91 միլիոն ք. մ բնակարան





# ԵՐԿՈՒ ՀԱԿԱՊԱՏԿԵՐ

(Թվեր և փաստեր)

Սովետական հասարակարգը ստեղծագործական մեծ հնարավորություններ է ստեղծել կանանց համար։ Մեր երկրում մայրերն ու մանուկները շրջապատված են ջերմ հոգատարությամբ։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը.

*Մեր երկրում աշխատանքով զբաղված են 47,6 միլիոն կանայք, որոնք կազմում են բոլոր աշխատողների 48 տոկոսը։ Սովետական Միությունում բժիշկների 79 տոկոսը, ինժեներների 36 տոկոսը, իրավաբանության գծով աշխատողների 30 տոկոսը կանայք են։*

*Սովետական պետությունը մեծ հոգատարություն է ցուցաբերում կանանց կրթության և ուսման գործի նկատմամբ։ ՍՍՌՄ-ում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների 59 տոկոսը կանայք են։ Մեծ է կանանց դերը սովետական գիտության զարգացման բնագավառում։ Այժմ 700 կանայք արժանացել են ակադեմիկոսի, ակադեմիայի իսկական անդամի, թղթակից-անդամի, պրոֆե-*

սորի կոչման։ Շուրջ 12 հազար կանայք ունեն դոցենտի և ավագ գիտական աշխատողի կոչում։ Տեխնիկայի նվաճման բնագավառում աշխատում են մեծ թվով ինժեներ կանայք։

Կանայք ակտիվորեն մասնակցում են երկրի կառավարման աշխատանքներին։ Բավական է ասել, որ ՍՍՌՄ 6-րդ գումարման Գերագույն Սովետի 1.443 դեպուտատներից 390-ը կանայք են։

Մեծ ուշադրություն է դարձվում կանանց բուժսպասարկման գործին։ Կանանց հղիության ժամանակ տրվում է 112 օր արձակուրդ՝ աշխատավարձի և աշխատանքի տեղի լրիվ պահպանմամբ։ Սովետական կանանց համար սահմանված է աշխարհում կենսաթոշակի ամենացածր տարիքը՝ 55 տարի։

Մեր ռեսպուբլիկայում մոտ 1.500 կանայք, որոնք ծնել ու դաստիարակել են 10 և ավելի երեխա, ստացել են «Հերոսուհի մայր» պատվավոր կոչումը։ Ամեն տարի պետությունը միայնակ ու բազմազավակ մայրերին տալիս է 500 միլիոն ռուբլու նպաստ։ Մեր երկրում 39 միլիոն աշակերտներ սովորում են հանրակրթական դպրոցներում։ 1958 թվականի համեմատությամբ, 1962 թվականին աշակերտների թիվն աճել է 8,5 միլիոնով, համարյա այնքան, ինչքան աշակերտ սովորում էր նախահեղափոխական Ռուսաստանում։

Գիշերօթիկ դպրոցներում սովորում են 1,5 միլիոն



աշակերտ, իսկ յոթնամյակի վերջում նրանց թիվը կհասնի 2,5 միլիոնի։

Այժմ ՍՍՌՄ-ում գործում են 2.750 պիոներական պալատ և տուն, պատանի տեխնիկների մոտ 300 կայան, պատանի բնագետների 236, մանկական էքսկուրսիոն-տուրիստական 141 կայան, ավելի քան 5 հազար մանկական գրադարան, 35 հազար մանկական երկաթուղի, 156 մանկական զբոսայգի։

Մեր ռեսպուբլիկայի պիոներները հպարտությամբ են խոսում Հայաստանի նոր կառուցվող Արտեկի մասին՝ «Արևիկ» պիոներական ճամբարի մասին։ Էլ ո՞ր երկիրը կարող է ցուցաբերել այսպիսի հայբական հոգատարություն դեպի աճող սերունդը։

Մի անգլիացու, որը եղել է մեր երկրում, բուրժուական ժուռնալիստները հարցրել են՝ ՍՍՌՄ-ում կա՞ արդյոք արտոնյալ դասակարգ։
— Այո, կա,— պատասխանել է անգլիացին,— դրանք երեխաներն են։

Մենք իրավացիորեն հպարտանում ենք, որ մեր Հայրենիքում ուսումը ձրի է, որ 1—4-րդ դասարանների կարիքավոր աշակերտները ձրի սնունդ են ստանում, որ հանրակրթական դպրոցների դասագրքերը, ուսանողները, ուսանողական հանրակացարաններ... ձրի են։

Սոցիալիստական լագերի բոլոր երկրների կառավարությունները մեծ հոգատարություն են ցուցաբերում

դեպի աճող սերունդը, դեպի մանուկները։ Լեհաստանում մանկամսուրների թիվը 1938 թվականի համեմատությամբ ավելացել է 30 անգամ։ Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը ավելացել է 40 անգամ։

Այլ է պատկերը կապիտալիզմի երկրում։ Երեխաներից շատերը սովից ու հիվանդությունից հյուծված, դեռ չհասած մեկ տարեկան հասակին՝ մեռնում են։ Հազարավոր երեխաներ անգրագետ են։ ԱՄՆ-ում դըպրոցական շենքերի մեծ մասը խարխուլ է, տարեցտարի կրճատվում են դպրոցաշինական գումարները։

Այժմ աշխարհում յուրաքանչյուր օր ծնվում է 180 հազար երեխա, որից 40 հազարը մահանում է ծննդից մի քանի ժամ հետո։ Շուրջ մեկ միլիարդ երեխաներ տառապում են սովից ու հիվանդություններից։ Մեծ է, շատ մեծ է երեխաների մահացությունը Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում։ Կատարված հաշվարկումների համաձայն երկրագնդի վրա ամեն օր սովից մեռնում է 9 հազար երեխա։ Աֆրիկայի մեծ մասում 10 նորածիններից 8-ը մահանում են։

Երեխաների վիճակը սարսափելի ծանր է Թուրքիայում, որտեղ երեխաների, հատկապես աղջիկների, վաճառքը սովորական երևույթ է։ Միայն Ստամբուլ քաղաքում կան շուրջ 10 հազար թափառաշրջիկ, անօթևան երեխաներ։



Վերջերս ամերիկյան թերթերից մեկը գրել է. «Խայտառակություն է, որ Ամերիկայում երեխաները տանջվում են սովից ու ցրտից»։

Իտալիայում 173 հազար երեխա ամեն տարի մընում են դպրոցից դուրս, իսկ 38 հազարը՝ ընդհատում են իրենց ուսումը, դեռ չհասած 5-րդ դասարան։

Արգենտինայի կանանցից մեկը պատմում է իր դառը կյանքի մասին. «Ես ունեմ 3 երեխա և բոլորս սոված ենք և երբ մեկ անգամ իմ մեծ տղային հարցրի՝ ի՞նչ ես անելու, երբ մեծանաս,— նա բացականչեց ուտելու եմ շատ հաց»։

Չափազանց ծանր է կանանց վիճակը կապիտալի երկրներում, հատկապես ԱՄՆ-ում, որտեղ կանայք զուրկ են ամենատարրական իրավունքներից։ ԱՄՆ-ում աշխատանքի իրավունքից օգտվում են միայն 22 միլիոն կին։ Միացյալ Նահանգներում ինժեներների միայն մեկ տոկոսը, բժիշկների 7 տոկոսը, իրավաբանության բնագավառի աշխատողների 4 տոկոսն են կազմում կանայք։ Այդ «ծաղկուն» դեմոկրատիայի երկրում աշխատող կանանց 11 տոկոսը տնային ծառայողներ են։ Բոլոր գործազուրկների 32 տոկոսը կազմում են կանայք։

ԱՄՆ-ում կանայք և տղամարդիկ միևնույն աշխատանքի համար հավասար վարձատրություն չեն ստանում։ Ամերիկյան «Դեյլի պիպլս ուորլդ» թերթը գրում

է. «Եթե համկարծակի ԱՄՆ-ի բոլոր կանայք դառնան
տղամարդ, ապա ձեռնարկատերերը պետք է աշխատա-
վարձ վճարեն 10 միլիարդ դոլար ավելի, քան վճա-
րում են այժմ»:

ԱՄՆ-ի միայն 6 նահանգներում կանայք իրա-
վունք ունեն օգտվելու հղիության արձակուրդից, որը
կազմում է 42—56 օր: Միևնույն ժամանակ ձեռնարկա-
տերերը պարտավոր չեն վճարելու այդ արձակուրդը և
պահել աշխատանքի տեղը: Կապիտալիստները ամեն
կերպ հրաժարվում են ամուսնացած կանանց աշխա-
տանքի վերցնել:

Բժշկական օգնությունն այնքան թանկ է, որ ծնըն-
դատանը 6 օր մնալու համար ամերիկացի մայրը վճա-
րում է 500—600 դոլար: Ահա այդ է պատճառը, որ
հաճախ շատ ու շատ չունևոր կանայք ծննդաբերում են
փողոցներում: Իսկ նրանց օգնելու համար ամերիկյան
«դեմոկրատիան» գտել է ելքը՝ ոստիկաններին սովո-
րեցնում են մանկաբարձության գործը:

ԱՄՆ-ում կանանց թոշակ ստանալու տարիքը
հասնում է մինչև 62-ի:

Նյու-Յորքի ունիվերսալ խանութներից մեկում
ոստիկանությունը բռնեց առանց հսկողության թողնված
երկու փոքրիկ երեխաների, որոնցից մեկի գրպանում
պահված էր մի երկտող հետևյալ բովանդակությամբ.
«Սրանք իմ երեխաներն են: Ես նրանց շատ եմ սի-



րում, բայց չունեմ փող, ուտելիք և բնակարան: Եղեք
բարի նրանց նկատմամբ»: Հետագայում պարզվեց, որ
երեխաների 29-ամյա մայրը փորձել է իր կյանքին վերջ
տալ ինքնասպանությամբ:

ՆԱՏՕ-ի անդամ պետությունները 10 տարվա ըն-
թացքում. ռազմական ծախսերի համար տրամադրել և
իրացրել են 500 միլիարդ դոլար: Իսկ չէ որ 100 մի-
լիարդ դոլարով կարելի է կառուցել 10 միլիոն տուն, 50
հազար դպրոց և 10 հազար հիվանդանոց: Այս թվերը
կրկնեք 5 անգամ, այդ կնշանակի, որ այդ երկրներում
աշխատավորները 10 տարուց 3 տարին լրիվ աշխատել
են միայն պատերազմի համար:

Խաղաղություն, միայն խաղաղություն— այս է
հարկավոր աշխարհի բոլոր մանուկներին: Մանուկների
երջանկության համար է, նրանց ապրուստի համար է,
որ պայքարում են բոլոր առաջավոր մարդիկ:

1963 թվականին Մոսկվա են հավաքվելու հա-
զարավոր կանայք՝ մայրեր, հավաքվելու են Կանանց
միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի հերթական
կոնգրեսին, որտեղ պետք է իրենց ցասումը հայտնեն
պատերազմի հրձիգների դեմ և խաղաղություն պահան-
ջեն:

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1.* Կոմունիստական շարժման միասնությունը խաղաղության և սոցիալիզմի հաղթանակի հզոր գործոնն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիզմի սիստեմի հզորության հետագա աճը, նրա վերածվելը համաշխարհային զարգացման վճռական գործոնի: Սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ եղբայրության ամրապնդումը, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիզմի պատմական հաղթանակները, *պարտիայի XXII համագումարում ՍՄԿՊ Ծրագրի մասին զեկուցումից, Հայպետհրատ, 1961:*

Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Դեկլարացիան, խաղաղության Դեկլարացիան, *Հայպետհրատ, 1957:*



Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, *Հայպետհրատ, 1960:*

Ամրապնդենք կոմունիստական շարժման միասնությունը հանուն խաղաղության և սոցիալիզմի հաղթանակի, *«Պրավդա»-ի 1963 թվականի հունվարի 7-ի խմբագրական հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 8-ի համարում:*

## 2. Հանուն արդյունաբերության տեխնիկական առաջադիմության

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի տնտեսական հզորության բարձրացման համար մղվող պայքարը: Յոթնամյա պլանը կարևոր էտապ է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական քաղաքականության ղեկավարման կենտրոնացումը և տնտեսական շինարարության կառավարման կատարելագործումը, *ՍՄԿՊ Կենտ-*

*կոմի Նոյեմբերյան պլենումին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1962։*

Գիտական նոր հայտնագործություններ Հայրենիքին։ Արդի տեխնիկայի հրաշքները, *թղթակցություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 4-ի համարում։*

### 3. Արտադրանքի որակը ուշադրության կենտրոնում

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի տնտեսական հզորության բարձրացման համար մղվող պայքարը։ Յոթնամյա պլանը կարևոր էտապ է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական քաղաքականության ղեկավարման կենտրոնացումը և տնտեսական շինարարության կառավարման կատարելագործումը, *ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1962։*

Յոթնամյակի հինգերորդ տարին, *«Պրավդա»-ի 1963 թվականի հունվարի 2-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 3-ի համարում։*



### 4. Ապահովենք գյուղատնտեսական մթերքների ժամանակին և որակյալ վերանորոգումը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել գյուղատնտեսության զարգացման հաջողությունները։ Ավելի լրիվ բարելավել բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Մ. ՄԵԼՔՈՆՅԱՆ— Կենսագործենք Նոյեմբերյան պլենումի որոշումները, *հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1962 թվականի 12-րդ համարում։*

Ռացիոնալ օգտագործել մեքենա-տրակտորային պարկը, *հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1962 թվականի 12-րդ համարում։*

### 5. Կազմակերպված անցկացնել հանրային հոտի ձմեռային շրջանը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել գյուղատնտեսության զարգացման հաջողությունները։ Ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջմունքները

գյուղատնտեսական մթերքների ապարեգում: *ՍՄԿԿ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Գյուղի աշխատավորների պատվի գործը, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 12-ի առաջնորդողը:*

## 6. Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի օրը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— *Ճառ* Ռազմական Նավատորմի *Համառուսաստանյան* առաջին համագումարում 1917 թվականի նոյեմբերի 22-ին (դեկտեմբերի 5-ին), *Երկեր, հատոր 26, էջ 415—423, Հայպետհրատ, 1951:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Նամակ բանվորներին և գյուղացիներին Կոլչակի դեմ տարած հաղթանակի առթիվ, *Երկեր, հատոր 29, էջ 686—696, Հայպետհրատ, 1951:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— *Հասնել* միջազգային պրոբլեմների խաղաղ լուծման, մերկացնել պատերազմի հրձիգների մեքենայությունները ու մանևրները: Բարելավել պետությունների փոխհարաբերությունները, *ՍՄԿԿ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*



Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Արդի միջազգային դրությունը և Սովետական Միության արտաքին քաղաքականությունը, զեկուցում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի սեսիայում 1962 թվականի դեկտեմբերի 12-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի դեկտեմբերի 13-ի համարում:*

Մեր մեծ նպատակն է՝ խաղաղություն, ըստեղծարար աշխատանք, կոմունիզմ, *«Պրավդա»-յի 1962 թվականի դեկտեմբերի 15-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի դեկտեմբերի 16-ի համարում:*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովի պատասխանները «Դեյլի էքսպրես» թերթի հարցերին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի հունվարի 1-ի համարում:*

ԱՐ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ— *Հայ* ժողովուրդը Հայրենական Մեծ պատերազմում, *Հայպետհրատ, 1954:*

Կ. ՄԻՐԶԱԽԱՆՅԱՆ— *Հայաստանի* կոմերիտմիությունը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին *Հայպետհրատ, 1956:*



# ՍՐԱՄԻՏ ԽՈՍՔԵՐ

## ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆ

Գյուղական ակումբում մի մարդ երկար ու ձանձրալի դասախոսություն է կարդում։

— Ո՞վ ինչ հարցեր կամ առաջարկություններ ունի,— վերջում հարցնում է նա։

Տեղից վեր է կենում մի ծերունի և ասում.

— Առաջարկություն կա, որպեսզի դուք ձեր խոսքերով պատմեք, թե ինչի մասին էիք այդքան երկար խոսում։

## ԽՈՐՀՈՒՄ Է

Կոլտնտեսության նախագահը դրասենյակ է կանչում կոլտնտեսականներին և ասում.

— Ինչ է, Կարապետ, մտածու՞մ եք արդյոք, որ ձեր կինը աշխատանքի դուրս չի գալիս։

— Այո, ես ամբողջ գիշերներ մտածում եմ մի այնպիսի բան անել, որպեսզի և ձեր և իմ կինը միասին աշխատանքի դուրս գան,— պատասխանում է Կարապետը։

## ԻՆՔԸ ԳԻՏԻ

Մի ուսանող ինստիտուտ է գնում բուսաբուծությունից քննություններ հանձնելու։ Նրա հագուստի գրպանները լցված են լինում շպարգալկաներով (ծածկագրերով)։



Որպեսզի չմոռանա, թե որ գրպանում ինչ կա, գնալիս ստուգում է ինքն իրեն։

— Այստեղ տարեկան է, և ձեռքը հպում է ձախ գրպանին, այստեղ՝ ցորեն է, ձեռքով բռնում է աջ գրպանը, այնտեղ՝ հնդկացորեն, շոշափում է նա իր կուրծքը։

Վերջապես ձեռքը տանում է դեպի գլխարկը և ասում.

— Իսկ այստեղ... ոչինչ չկա։

## ԿՈՇԿԱԿԱՐԸ ԲԺՇԿԻ ՄՈՏ

Բժիշկ— Ինչից եք գանգատվում։

Կոշկակար— Ամեն ինչից։ Լեզուս ասես ներբան լինի, կոկորդիս մեջ ինչ-որ մեկը կարծես մոռացմամբ մեխ է թողել, ստամոքսս մոմած թելով է ձգված, աչքերիս մեջ ասես սոսինձ է լցված, ականջներս կարծես բզով են ծակում, իսկ ինչ վերաբերում է ինձ, կարծես ինչ-որ մեկը կաղապարի վրա է քաշել։

Խմբագիր՝ Վ. Խ. ՍՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству промышленностью и строительством

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству сельскохозяйственного производства

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 2

## 1963

ՎՖ 09842 Պատվեր 62 Տիրաժ 8216

Հանձնված է արտադրության 16/I 1963 թ.
Ստորագրված է տպագրության 23/I 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։